Վա՛ռ ու հպո՛ր քո ապագան
Կայծակում է իմ դեմ.
Դո՛ւ, հավերժող իմ Հայաստան,
Անուն քա՛ղցր ու վսե՛մ:

*ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ*

# Պիոներ

11 ՆՈՅԵՄԲԵՐ 1960



# ԵՐԿԻՐ ՀԱՅԱՍՏԱՆ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Այս լեռների վրա,
Սեգ լեռների վրա,
Այս երկնքի ներքո՝ խորունկ ու լուրթ,
Դար ու դարեր ապրել,
Մաքառել է դարեր
Մի հին, աշխարհաշեն մի ժողովուրդ։
Նա օջախն իր վառել
Ու ապրել է խաղաղ,
Խոփն է սիրել կյանքում
Եվ նիզակն է ատել,
Բայց եկել է մի օր մի բռնակալ, մի Բել,
Եվ ասել է Բելը.
— Դուք պիտի ճորտ լինեք,
Եվ ես պիտի լինեմ ձեզ և՛ արքա, և՛ տեր։
— Ո՛չ,—ասել է Հայկը ու Բելի դեմ կանգնել։
Եվ կռիվ է եղել,
Մարտ է եղել դաժան...
Հայկը ունեցել է մի լայնալիճ աղեղ,
Որից թռած նետը սուրացել է ահեղ,
Տապալել է Բելին ամբարտավան։
Եվ ապրել է նորից այդ ժողովուրդը հին,
Որ ճարտար է եղել
Ու եղել է արդար,
Սերմնացան է եղել,
Շինարար է եղել
Ու գրքեր է գրել նա ոսկետառ։
Քարից ինչե՞ր ասես, որ չի կերտել կյանքում՝
Բերդե՞ր, վարդե՞ր, ծաղի՞կ, կամար ու սյուն...
Բայց եկել է նորից
Մի բռնակալ Մելիք
Ու աստղաթիվ զորքով մտել Սասուն։
Եկել, ասել է նա, թե՝ հարկ տվեք դուք ինձ,
Ոսկի տվեք դուք ինձ,
Ամեն ինչ ինձ տվեք։

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




Բայց Սասունում բարձրիկ եղել է մի Դավիթ,
Մի Սասունցի Դավիթ,
Որ դյուցազուն էր, սեգ։
Իր կայծակե թրով Մելիքի դեմ ելել,
Ուղիղ երկու կես է արել նրան,
Ապա դարձել զորքին,
Ժողովրդին դարձել,
Խոսք է ասել բարի խաղաղության։
Եվ ապրել էր նորից այդ ժողովուրդը հին,
Որ ճարտար է եղել
Ու եղել է արդար,
Սակայն ելել նորից ասպատակել էին,
Խոցել էին նրան միշտ, դարեդար։
Եվ ավերել էին քաղաքները նրա,
Նրան քաշել սրի,
Գերել, տարել էին զավակներին նրա,
Ու գյուղերը բոլոր մատնել հրի։
Բայց քառասուն տարի այս օրերից առաջ
Մի ձայն հնչեց արդար, ազատության մի կանչ,
Դա որոտն էր ըմբոստ, ձայնն էր Հոկտեմբերի,
Որ դրոշի նման ծփաց մեր լեռների,
Մեր ձորերի վրա։
Ձայնն էր դա Լենինի,
Ձայնն էր արդարության։
Եվ այդ ձայնից զարթնած՝
Ընդոստ ոտքի ելան
Նրանք, որոնք կյանքում միշտ ճորտ էին, գերի...
Ու փշրելով շղթան կուռ ձեռքերի,
Դարձան ազատ,
Դարձան տերը իրենց բախտի...
Նրանք խոր ձորերից վեր հանեցին գետեր
Եվ արտերով ոսկի,
Այգիներով ծփուն
Զարդարեցին կուրծքը անապատի։
Ստիպեցին նրանք, որ գետերն այդ վարար
Դառնան լույս ու բարիք,
Որ լույսերով այդ վառ,
Բարիքներով անբավ
Վանեն վիշտ ու կարիք...
Ծաղիկների ծովեր, այգեստաններ ոսկե
Տարածվեցին Հայոց ազատ հողում,
Ու վառվեցին լույսեր,
Որ աստղերից շատ են հիմա շողում։
Երևանը եղավ
Մի վարդագույն հրաշք,
Մի վարդագույն քաղաք,
Եվ գյուղերից ելավ ու բարձրացավ երկինք
Բախտի ծուխը խաղաղ։
Իմ Հայաստան երկիր,
Դու կանգնած ես հիմա
Քո Պետական բոսոր դրոշակով,
Երևանով շքեղ,
Այգիներով ծաղկուն,
Հմուտ սերմնացանի,
Շինարարի փառքով։
Դու կանգնած ես ազատ եղբայրների հետ քո,
Քո տասն և չորս հզոր եղբայրների,
Եվ այլևս կյանքում ոչ մի Մելիք ու Բել
Վիշտ, տառապանք, չարիք քեզ չեն բերի...
Դու կանգնել ես հպարտ
Եվ քո կրծքի վրա
Մի նշան է շողում արևային
Եվ նշանից այդ վեհ
Լենինն է քեզ ժպտում,
Նա, որ լույս է տվել ողջ աշխարհին։




ՆՈՅԵՄԲԵՐ № 11 1960 Թ.
Հրատարակության 32-րդ տարի
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ
ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




(Արձակ բալլադ)

1.

1920 թվականի նոյեմբեր ամիսն էր։

Բուքը ուզում էր տեղահան անել տերևաթափ ծառերը։ Խոնավ գետնահարկում, հնոտիների մեջ փաթաթված, զարմանքով ու անմեղությամբ լի խոշոր աչիկները սև առաստաղին հառած, ծղրտում էր մի փոքրիկ-փոքրիկ տղա։

Նա ոչ օրորոց ուներ և ոչ էլ օրոր ասող։

Մայրը մահացել էր մի քանի օր առաջ, իսկ բանվոր հայրը քաջի մահով ընկել էր Նոյեմբերի համար։

— Ծպտում է, բայց առանց մոր կմեռնի,— ասում էին նրան խնամող գաղթականները։

Բայց տղան ապրեց։

2.

Սկզբում նա չորեքթաթ էր տալիս, հետո բակ ելավ ու անձրևի, ձյան, փոշու և կիզիչ արևի տակ մեծացավ, մեծացավ։

— Ամուր է և դիմացկուն, ինչքան էլ նման է հորը,— ասում էին հարևանները,— բայց լավ կլինի, եթե որբանոց տանեք։

Ու փոքրիկ տղային որբանոց տարեցին։

Սակայն նա երկար չդիմացավ այնտեղ։ Նա սև, խոշոր ու կրակոտ աչքեր ուներ, խիզախ էր ու համարձակ։ Նրան պատժում էին ամենաչնչին մեղքերի համար և ստիպում չոքած աղոթել։

Եվ նա փախավ այնտեղից։

3.

Այժմ նրան կարելի էր տեսնել արևելյան այդ քաղաքի կեղտոտ, ծուռումուռ փողոցներում և հատկապես խաժամուժով, մանր առևտրականներով ու գրպանահատներով լցված փոշոտ շուկայում։ Մայիսին նա թարմ ծաղիկներ էր վաճառում, ամռան շոգերին՝ սառը ջուր, իսկ հետո, երբ բավականին մեծացավ, կոշիկներ էր մաքրում հնամյա մզկիթի առջև։

[1] Մաքրում ենք, փայլեցնում ենք...

Կոշիկներ էր մաքրում ու, խոզանակները իրար զարկելով, կարկաչուն ձայնով անցորդներին կանչում.

— Չիստի՛մ, բլիստի՛մ...[1]

4.

Գտնվում էին մարդիկ, որ շոյում էին նրա գանգրահեր գլուխը և մի քան էլ ավելի վճարում։ Լինում էին նաև այնպիսիները, որ գլխարկը քաշում էին նրա աչքերին ու հռհռալով հեռանում, ինչպես անում էր Նիկոլի պոչը։

Նիկոլի պոչը մանր առևտրական էր, վարունգանման երկար քթով, ուռած, գորտի աչքերով։ «Ցիպլյոնոկ վարեննի» էր երգում և, մզկիթի բակի թեյարանում, մուգ թեյով լի ափսեն երեք մատի ծայրերին առած, շառաչյունով խմում։

Այո, ծանր էր ու անտանելի մաքրել ամեն մի անցուդարձողի կոշիկները։ Իսկ երբ վիրավորում էին, նրա սև, խոշոր աչքերը լցվում էին զայրույթով, նա խոզանակները ցավեցնելու աստիճան սեղմում էր իր անզոր ձեռքերի մեջ և, լացակումած, նորից ու նորից կանչում.

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ




— Չիստի՛մ, բլիստի՛մ

5.

Բայց, օրերից մի օր, անցորդների մեջ պատահեց արդեն ալեհեր, բարի՛, բարի՛ դեմքով մեկը, որ կարեկցեց նրան։

— Ծնողներ ունե՞ս։

Նա քիչ մնաց լաց լիներ. մինչև այդ դեռ ոչ-ոք այդպիսի հարց չէր տվել նրան։ Նա ուռեցրեց շրթունքները, օրորեց գլուխը։

— Չե՞ս ուզում սովորել,— հարցրեց մարդը։

Զարմանքից խոզանակները վայր ընկան նրա փոքրիկ ձեռքերից։

... Հետևյալ օրը նա նստած էր դասարանում։ Թեև սառը ջրով, նա լվացել էր իր կարկատած շապիկը, խնամքով սանրել մազերը։

Իսկ ուսուցիչը հենց այդ նույն, բարի՜, բարի՜ դեմքով, ալեհեր մարդն էր։

Օրերն անցնում էին օրերի հետևից։ Բուքը ոռնում էր դպրոցի լուսամուտների տակ, ձյունը բամբակի պես նստում էր քիվերին, իսկ դասարանում տաք էր ու հաճելի, գրքերը լուսավոր ու հեքիաթային...

— Բայց նա շատ է ուշացել,—ասում էին նույնիսկ ուսուցիչներից ոմանք։

— Ոչ, նա կսովորի,—պատասխանում էր առաջին ուսուցիչը։

Ասես նույնն էր հաստատում նաև կկոցած աչքերով ժպտացող մարդու դիմանկարը, որը փակցրված էր ուսուցչանոցի պատին։

— Իհարկե, կսովորի։

Եվ նա սովորեց։ Նա համարձակ էր ու ժրաջան, միտքը կտրուկ էր, լուսածարավ, արդարատենչ։

Ու մի օր էլ, երբ ալեհեր ուսուցիչն ասաց, որ



Նկ. ՎԱՋԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

վերացվել է մասնավոր առևտուրը, նա՛, միայն նա՛ էր, որ իրենից անկախ, ամբողջ դասարանով մեկ ուրախացած բացականչեց.

— Ինչ լա՜վ է...

Որովհետև «մաքրվում է» քաղաքը, էլ չեն լինելու Նիկոլի պոչերը, էլ ոչ ոք այնպես անպատիժ կերպով չի նեղացնելու անմեղ որբերին ու չի հափշտակելու արդար քրտինքով շահած նրանց կոպեկները։

Եվ նա ուրախությունից շողացող աչքերը իր սև ու փայլուն գրասեղանին հառած՝ անզուսպ ձայնով շշնջաց.

— Զխտի՜մ, բլխտի՜մ...

6.

Նրան նոր հագուստներ տվեցին, նոր կոշիկներ ու կարմիր վզկապ...

## ԱՄԵՆԱՊՈԵՄ

(հատված)

Ե. ՉԱՐԵՆՑ

Մոսկովը ծփաց փողփողուն,
Ինչպես մի բոսոր դրոշակ—
Պարզե՛ց արնավառ աշխարհին
Մի կարմիր խնդության նշան։

Ու ելած հողմերից այդ վառ,
Որպեսզի խորտակե այդ հինը՝
Լեռնացավ, որպես ղեկավար,
Ու կանգնեց Լենինը։

... Կանչում էր—երկրից-երկիր,
Զայնում էր խանդով բոցավառ,
—Ելի՛ր, սովալլուկ մարդկության
Անեծքով գերված աշխարհ...

Հյուսիսից մինչև արևելք,
Մինչև Հինդ, Հաբաշ, Հնդուչին—
Կանչում էր՝ «Եղբայրնե՛ր, ելե՛ք—
Սա է մեր կռիվը վերջին»։

Եվ ահա այդ ահեղ կանչին
Շիրակի դաշտերից—հանկարծ—
Զրահապատը խանդով առաջին
Նաիրի դաշտերում գնգաց։

Զրահապատը գնգաց գնգուն,
Շիրակի դաշտերից կանչեց—
Նաիրի հնամյա երկրում
Կարմրավառ, ահեղ հնչեց...

Ու կարմիր, հրդեհի նման
Մրրիկներ անցան սրընթաց—
Եվ, ելած քնից հնամյա՝
Արևելքը, կարմիր, խնդաց։

Այժմ նա պիոներ էր, սև, խոշոր ու կրակոտ աչքերով ուշադրավ մի պիոներ, որ աճում էր օրեցօր, ինչպես քաղաքի գլխավոր փողոցի նորատունկ, կանաչազգեստ ծառերը, ինչպես հենց օրեցօր գեղեցկացող, հնաթյան փոշիներից մաքրվող արևելյան այդ քաղաքը։ Նա միշտ ընկերների մեջ էր, միշտ նորակառույց ակումբներում, որ արտասանում էր իր զրնգուն ձայնով, ամենուր, դրոշազարդ կարմիր անկյուններում և վզկապի պես կարմիր-կարմիր սրտերում...

—Նա իրենց չախմախ-հոգին է, նա իսկական պիոներ է,—ասում էին մեծերը։



Եվ նա հազիվ տաս տարեկան էր այդ ժամանակ, ինչպես պարտիզաշատ, վարդագույն շենքերով ու գործարաններով բարձրացող հարազատ քաղաքը, ինչպես արվարձանները մերձակա և նրանցից դեռ տարածվող ծաղկուն գյուղերը, ավանները՝ ամբողջ հայրենիքը:

Բայց ահա, շատ չանցած, տխուր ու ցավալի լուրեր հասան հայրենի դաշտերը: Նախկին հողատերերը թաքուն ու աշկարա ոչնչացնում էին դեռ նոր ոսկուն տվող համայնական արտերը, աղոցում ու տրորում պտղավորվող այգիները:

Եվ նա առաջինն էր առաջիններից, որ ամռան արձակուրդներին, պաշարի փոքրիկ կապոցը մեջքին, մոտակա գյուղերն իջավ համայնական բերքը անվտանգ հավաքելու համար:

Փոքրիկ էր նա, սակայն քաջ ու համարձակ, չարքաշ ու դիմացկուն, ինչպես խոպանի առաջին բերքը, որ սև երամների պես կրծոտում ու տրորում էին գիշերներով, մթին սարերից իջնող ժողովրդի թշնամիները:

Եվ նա այնտեղ էր մերթ որպես փոքրիկ հասկահավաք, փոքրիկ այդ լրաբերը, որ այծյամի պես մագլցում էր սարերն ի վեր, որ թռչում էր գնդակից էլ արագ, թշնամուն հայտնաբերում լույսից էլ շեշտակի:

Եվ սիրվում էր բոլորից այդ փոքրիկ սուրհանդակը, իր կարմիր վզկապի պես բոցավառված կարմիր-կարմիր սրտերում:

— Կապանե՞ն տղային... — ասում էին բարի մարդիկ ափսոսանքով:

Բայց նա ապրեց: Եվ երբ «մաքրվում» էին հայրենի սարերը սև բանդիտներից, բարձրագլուխ ժայռերի վրա, աչքերը հառած արշալուսավող լեռներին ու դաշտերին, ժպիտն աչքերում՝ նա շշնջում էր հին օրերի պես.

— Չիստի՞մ, բլիստի՞մ...

7.

Ու մի օր հաջող մարտից հետո, մի ծեր կոլտնտեսական, որի ձեռքում դեռ ծխում էր շիկացած հրացանը, պատմեց նրան մի բանվորի մասին, որ քաջի մահով ընկել էր հենց այդ սարերում՝ Կարմիր Նոյեմբերին:

— Վերքը խորն էր, բայց կապրեր, եթե վիրաբույժ գտնվեր, — ափսոսանքով լի հառաչեց նախկին պարտիզանը:

— Իսկ ինչպե՞ս էր նրա անունը, — հարցրեց փոքրիկ լրաբերը:

Եվ երբ լսեց այդ քաջ բանվորի անունը, արցունքի երկու կաթիլ քարացան քամիներից այրված նրա այտերի վրա:

Այդ սեգ սարերում, այդ շեկ սարերում հերոսի պես ընկած ջահել պարտիզանը իր քաջ հայրիկն էր...

— Եթե վիրաբույժ լիներ...



Եվ նա որոշեց վիրաբույժ դառնալ, որ էլ ոչ մի թշնամական գնդակ չմնա հայրենիքի սիրով տրոփող լցված կրծքերի մեջ, որ մարդիկ, լավ մարդիկ ապրեն, և ոչ մի ցավ ու տառապանք նրանց չկտրի հեքիաթից գեղեցիկ այս ազատ լեռնաշխարհում...

## ԳՈՎԵՐԳ ԿԱՌՈՒՑՄԱՆ

Ն. ԶԱՐՅԱՆ

Ոսկեբազուկ իմ Հայաստա՛ն, դու կառուցում ես նորից,
Վերածնության քո նոր ոգով դու կառուցում ես նորից:

Քեզ կործանում էին անվերջ հազարամյա քո ճամփին,
Կործանողները մահացան, դու կառուցում ես նորից:

Ձեռնոց էիր նետում Հռոմին, Բյուզանդիոնին պերճաշուք,
Քո մրցորդներն անզորացան, դու կառուցում ես նորից:

Սովետական արևի տակ ծաղկեց կերտող քո ոգին,
Եվ կամարները նոր քո տան դու կառուցում ես նորից:

Կանգնած են լույս երկնքի մեջ սյունաշարերդ շքեղ,
Աշտարակներդ կառուցման, դու կառուցում ես նորից:

Նոր վանդալները կործանման անարգ զենքեր են նյութում,
Բայց դու՝ խաղաղ և անսասան, դու կառուցում ես նորից:

8.

Հետո նա նորից հարազատ քաղաքումն էր. փոխվում էին գրասեղանները, փոխվում էին գրքերը, ուսուցիչները, փոխվում, գեղեցկանում էր քաղաքը, և նա ինքն էլ օրեցօր, տարեց տարի մեծանում էր, առնականանում:

Մոտ էր, արդեն շատ մոտ էր նրա երազանքը, ահա, ահա կգար հայրենի հասուն աշունը, նա ոտք կդներ լսարան ու կսովորեր, անքուն գիշերներով կսովորեր վիրաբուժության գաղտնիքները, կդառնար բժիշկ:

Նա այժմ փարթամ ու գեղեցիկ գանգուրներ ուներ, խիզախ ու խոհուն հայացք և լայնաթիկունք էր ինչպես իր հայրը:

Բայց դեռ նոր էին թառամել մայիսյան ծաղիկները, դեռ նոր էին ոսկեվորվում արտերն ու պարտեզները, երբ թշնամական արկերի սև ծխի ամպերը տարածվեցին հայրենի սահմաններից ներս ու սկսեցին առաջ սողալ...

Եվ նա հրացան առած, այս անգամ գրոհում էր սև ծխի միջից դեպի թշնամին, մերթ անդադամռունչ Սև ծովի ափերում, մերթ բլուրների վրա ինչպես ազատասեր արծիվը, և միշտ առաջ, առաջ մինչև թշնամական որջը, ինչպես այն օրերին, երբ դեռ մի փոքրիկ լրաբեր էր, կարմիր-կարմիր վզկապով...

Նա կաթիլ առ կաթիլ կորցնում էր իր արյունը, տեսնում իր կողքին ընկնող հերոսներին, հիշում իր բաց հայրենին և թնդանոթների որոտների մեջ, ծխահարված, ծարավից ու վրեժի տենդից այրվող շրթունքներով շշնջում.

—Կմաքրենք մայր հողը ձեզնից: Եվ կբուժենք, շատ շատ կբուժենք մեզ հասցրած բոլոր վերքերը...

Եվ այդ պահերին, ասես ինչ-որ ծանոթ մանկական մի ձայն արձագանքում էր նրան.

— Չիստի՛մ, բլիստի՛մ...

9.

Եվ ահա նոյեմբերն է նորից, ոսկի աշնան գով ու հեքիաթնաշունչ օրերից մեկը: Կապույտ երկինքում ո՛չ ծուխ, ո՛չ ամպի ծվեն, և չնաշխարհիկ քաղաքն ասես տոնում է ինչպես կենսուրախ, երազանքներով լի երիտասարդ սիրտը:

Քաղաքն հրճվանքի մեջ է:

Այնտեղ, քաղաքային հիվանդանոցներից մեկում, քիչ առաջ մի անօրինակ վիրահատություն է կատարվել: Երիտասարդ քաջահմուտ մի բժիշկ սրտի վիրահատություն է կատարել՝ մահվան ճանկերից փրկել մի փոքրիկ տղայի. և այդ փոքրիկի պապը, բարի-բարի դեմքով ու հրապարակավ այդ ծերունին, երախտագիտության արցունքն աչքերում շնորհակալություն է հայտնում երիտասարդ բժշկին: Իսկ նա ժպտում է համեստորեն: Նրանք կանգնած են բաց լուսամուտի առջև, որտեղից երևում է երիտասարդ, տոնական քաղաքը:

— Եվ ո՞վ կմտածեր, որ դու՛, որ դու՛ պիտի փրկեիր,— շշնջում է հուզված նախկին ուսուցիչը,— հիշո՞ւմ ես...

— Չիստի՛մ, բլիստի՛մ...— պատասխանում է միայն ժպտացող բժիշկը, և էլ ուրիշ ոչինչ:

# Բոլշևիկյան Թոմասը

ՆԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ



Նա ծնվել է Սիսիանի Բռնակոթ գյուղում: Վարելահողն ու հանդերը պատկանում էին հարուստներին: Գյուղացիք ապրում էին կիսաքաղց ու չքավոր: Հագնում էին ցնցոտիներ, իսկ երեկոները խրճիթներում նույնիսկ ճրագ չէին վառում, խնայում էին նավթը:

Գյուղում նրան ասում էին Ագոնց Թումո: Կապուտաչյա, ժիր մի տղա էր նա: Դպրոցում հազիվ գրել-կարդալ սովորեց: Հետո՝ ցուպն առած, բոկոտն ու արևվառ, նա վազվզում էր ժայռերի վրա ցատկող ուլերի ու գառների հետևից: Երբ քիչ էլ մեծացավ, սկսեց ուրիշների տավարն արածացնել: Պառկում էր նա սարալանջի կանաչի մեջ, նայում կապույտ երկնքին ու երազում: Երազում էր լավ ապրելու մասին: Դեռ տաս տարեկան չկար, երբ հիվանդացավ ծաղիկով: Հիվանդությունից երեսը մնաց չեչոտ, և գյուղացիք նրան սկսեցին Չեչոտ Թոմաս ասել:

Հետո Թոմասը գնաց Բաքու: Ուզում էր լավ ապրել. «Բանվորություն կանեմ, փող կվաստակեմ»—մտածում էր նա: Գյուղում այսպես մտածում էին շատ երիտասարդներ, և շատերը գյուղից գնում էին Բաքու:

Բաքուն այն ժամանակ էլ արդյունաբերական խոշոր քաղաք էր: Այն ժամանակ էլ Բաքվում կային նավթահանքեր ու նավթաթորման խոշոր գործարաններ: Թոմասը աշխատանքի ընդունվեց նավթահանքում:

Այստեղ ավելի չարքաշ էր աշխատանքը, և ապրուստը ավելի խղճուկ: Բանվորները բոլորն էլ եկել էին գյուղերից: Նրանք համոզված էին, որ չկա արդարություն, որ մարդկանց մեծ մասը աշխատում է, որպեսզի մի փոքր մասը ապրի հարուստ: Կային մարդիկ, որոնք գիտեին անարդարությունից փրկվելու ճիշտ ճանապարհը: Նրանց անվանում էին կոմունիստներ: Նրանք գաղտնի հրատարակում էին թերթեր, գրքեր, ստեղծում էին բանվորական գաղտնի խմբակներ, կազմակերպում էին բանվորներին և նրանց հանում պայքարի: Թոմասը կարդաց նրանց թերթերը, գրքերը: Թոմասը մտավ նրանց կազմակերպած բանվորական խմբակի մեջ: Պետք էր հիմնովին տապալել հին, անարդարացի կարգերը և հաստատել նոր կարգ՝ բանվորների-գյուղացիների իշխանություն: Թոմասը ճանաչեց Ստեփան Շահումյանին, Բոգդան Կնունյանցին և ուրիշներին, լսեց նրանց խոսքը: Թոմասը մասնակցեց գաղտնի ժողովների, տարածեց թռուցիկներ, ելույթներ ունեցավ բանվորների հավաքներում: Թոմասը դարձավ կոմունիստ: Նա զենքը ձեռքին պայքարեց Ադրբեջանում Սովետական կարգերի հաստատման համար:

1919 թվականի օգոստոսյան մի գիշեր Թոմասը վերադարձավ հայրենի գյուղը: Մթան մեջ սսկված գյուղը ավելի խղճուկ թվաց, քան նա հիշում էր: Թոմասենց հին խրճիթում հավաքվեցին նրա հին ընկերները: Ոմանք նոր էին եկել Բաքվից, ոմանք փախել էին դաշնակցական բանակից: Նրանք խորհրդակցեցին. գյուղացիք հոգնած են դաշնակների հրահրած ազգամիջյան կոտորածներից, հաց չկա, գյուղում մոլեգնում է տիֆը: Որոշեցին. «Պետք է տապալել դաշնակների տիրապետությունը. Բռնակոթում պետք է հաստատել սովետական իշխանություն»:

Այդ յոթ երիտասարդները Բռնակոթ գյուղում կոմբջիջ ստեղծեցին: Նրանք գիտակցում էին, որ դաշնակները երկիրը տանում են դեպի կործանում, որ հայ ժողովուրդը կանգնած է ֆիզիկական բնաջնջման եզրին: «Ռուսաստանում բանվորներն ու գյուղացիները իրենց ձեռքն են վերցրել իշխանությունը: Դաշնակցությունը հայ ժողովրդի թշնամին է»— բացատրում էին նրանք գյուղացիներին: Նրանց խորհրդով գյուղացիները գրավեցին բեգերի հողերը և բաժանեցին իրենց միջև: Մինչ այդ կոմբջիջը մեծացավ, և նրա մեջ ներգրավվեցին շատ գյուղացիներ: Այժմ նույնիսկ տեղի դաշնակցական իշխանությունը հաշվի էր նստում նրա հետ: Ամեն




առիթով գյուղացիները դիմում էին նրան, ղեկավարվում նրա խորհուրդներով:

Եվ ահա 1920 թվականի մայիսի 16-ին, գյուղացիք ապստամբություն բարձրացրին: Ստեղծվեց ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե: Ձերբակալվեցին դաշնակների շրջանային ռազմական կոմիսարը, գավառային միլպետը և դաշնակցական ուրիշ մեծամեծներ:

Գյուղում հապճեպ միտինգ հրավիրվեց:

Կարմիր դրոշի մոտ կանգնած՝ խոսեց Թոմասը, այն նույն Թոմասը, որին մի ժամանակ գյուղացիք անվանում էին Ադոնց Թումո: Նա ասաց.

— Կոմպարտիայի Հայաստանի կոմիտեի անունից Բռնակոթը հայտարարում եմ սովետական:

Հետո խոսեցին կոմբջջի անդամները, խոսեցին գյուղացիք: Բավ է, որքան ճնշեցին մեզ, բավ է, որքան շահագործեցին, այժմ մենք ինքներս պիտի լինենք մեր աշխատանքի տերը, մենք ինքներս պիտի կառավարենք: Մենք կկառուցենք նոր կյանք:

Այսպես էին խոսում նրանք:

Բայց դա պայքարի դեռ սկիզբն էր: Իր զորքով Զանգեզուրում էր գտնվում դաշնակցական խմբապետ Դրոն: Իմանալով Բռնակոթի ապստամբության մասին, նա իր մոտ հրավիրեց ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ Թոմասին:

— Ազատեք բանտարկյալներին, ցրեք ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն, հողը վերադարձրեք տերերին և ենթարկվեք մեր կառավարությանը, — պահանջեց Դրոն:

Թոմասն ասաց.

— Մենք բանտարկյալներին բաց կթողնենք այն ժամանակ, երբ դուք ձեր զորքով կմաքրվեք Զանգեզուրից:

— Կհանդիպենք մարտում.— զայրույթը հազիվ զսպեց խմբապետը:

«Բոլորս դեպի դիրքերը»—կոչ արեց գյուղի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն: Գյուղում իրարանցում ընկավ. գյուղամերձ ժայռերը ամրացվեցին, դարձվեցին դիրքեր. ճանապարհների վրա կարմիր պարեկներ դրվեցին, ամբողջ գյուղը ոտքի ելավ իր ձեռք բերած ազատությունը պաշտպանելու համար: Նույնիսկ երեխաները հետ չէին մնում մեծերից: Բարձր ժայռերի վրա ծածանվում էր ռևոլյուցիայի կարմիր դրոշը:

Տեսնելով, որ Բռնակոթը հնազանդեցնելը այնքան էլ դյուրին գործ չէ, Դրոն Թոմասի մոտ ուղարկեց երկու պատգամավոր: Թոմասը այսպես պատասխանեց նրան.

— Եթե Դրոն ցանկանում է բանակցել մեզ հետ, թող ինքը բարեհաճի գալ:

Գյուղից դուրս, դիրքերին մոտիկ տեղի ունեցավ միտինգ. Թոմասը բացատրեց գյուղացիներին, թե ինչու իրենք չպետք է հանձնվեն, թե ինչու իրենք պետք է պայքարեն մինչև արյան վերջին կաթիլը:

— Արյան գնով ձեռք բերված իշխանությունը արյան գնով էլ չի կարելի հանձնել, —ասաց նա:

Հետևյալ օրը խմբապետ Դրոն վերցրեց իր զորքերը ու Բռնակոթի մատույցներից ետ քաշվեց:

## ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ԱՌԱՎՈՏ

Ալ դրոշներն են ծփում խաղաղ,
Ուրախություն է, իրարանցում.
Ժիր մանուկների երգով ուրախ
Արար-աշխարհն է այսօր ցնծում:

Լայն փողոցներում աղմուկ ու կանչ,
Ուռան է թնդում հոծ խմբերի.
Դեմքերի վրա բոլոր մարդկանց
Վառվում է հուրը Հոկտեմբերի:

Այս՝ Նոյեմբերը շարքի հետ մեր
Խնդում է որպես ուրախ մանուկ.
Եվ Երևանն է ցնծում ջահել,
Եվ փողոցներն են նեղվում բանուկ:

Երգում է քաղաքն իմ հայրենի.
Ալ դրոշները բռնած ձեռքին.
Եվ ձեռքը, ձեռքը մեծ Լենինի
Կարծես թե չափ է տալիս երգին:

ՌԱԶՄԻԿ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
Եղեգնաձորի շրջան, գյուղ Արենի

Ղարաբաղի կողմից Զանգեզուր էին մտնում 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը:

* * *

Սիրելի պիոներ, դու անտաբակույս շատ անգամ ես եղել Թավրիզյանի զբոսայգում, որը տարածված է Երևանի Պետօպերայի շենքի դիմաց:

Դու անշուշտ տեսել ես նստարաններին խումբ-խումբ նստած, զրուցող մեծահասակ շատ մարդկանց: Նրանք, այդ պապիկները, ժամանակին շատ են աշխատել, նրանք իրենց ամբողջ կյանքը նվիրել են այն բանին, որ մարդիկ ապրեն ավելի լավ ու երջանիկ: Եվ հիմա վայելում են իրենց հանգիստ ծերությունը:

Սիրելի պիոներ, եթե դու նրանց մեջ տեսնես ծաղկատար դեմքով, կապույտ, բարի աչքերով ու ճաղատ գլխով մեկին, ապա իմացիր, որ նա Ադոնց Թոմասն է, նույն այն Թոմասը, որը 1920 թվականի մայիսյան մի օր Սիսիանի Բռնակոթ գյուղում բարձրացրեց ապստամբության կարմիր դրոշը և հաստատեց սովետական իշխանություն:

ՀԱԶԱՐ ՇԵՓՈՐ ՀՆՉԵՆ ԹՈՂ.
ԱՅՍ ԱՌԱՎՈՏ,
ՀԱԶԱՐ ԹՄԲՈՒԿ ԽՓԵՆ ԹՈՂ.
ԱՅՍ ԱՌԱՎՈՏ.

# ՄԵՐ ՍԵՐՆԴԻ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

*ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Իմ ու ինձ նման շատերի մանկությունն անցավ կարիքի ու հոգսերի մեջ: Անարդարացի կարգեր, պատերազմ, որը մեր ժողովրդի մի մեծ հատված տեղահան արեց ու զրկեց հայրենի օջախից: Մահվան գերանդին, որ անողորմաբար հնձում էր թույլին ու ուժեղին, հնձեց նաև մեր ընտանիքը: Եվ ինը հոգուց բաղկացած մեր ընտանիքը հետզհետե մաշվեց, վերջում մնացինք երեք հոգի՝ մայրս, եղբայրս և ես:*

## ԳԱՂԹԻ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐՈՎ

*Հինգ տարեկան էի, երբ առաջին անգամ լսեցի «պատերազմ» խոսքը, որը մեծերն արտասանում էին սարսափով, իսկ մենք՝ փոքրերս, այդ բառի էությունը զգացինք այն ժամանակ, երբ բռնեցինք գաղթի ճանապարհը, թողնելով այն ամենը, ինչ հարազատ էր մեր մանուկ սրտին: Թողեցինք մեր Զանիկ տատիկին, որովհետև չհամաձայնվեց ամայացնել հայրենի օջախը: Թողեցինք նաև մեր գեղեցիկ ծովը, որը, կարծես հրաժեշտի համար, վերջին անգամ իր լայնատարած կապույտով բացվեց հորիզոնում, երբ գաղթի ոլորապտույտ ճանապարհով բարձրանում էինք սարն ի վեր…*

*Թանձր փոշին, որ պարուրել էր ճանապարհով շարժվող մարդկանց, վերջալույսի ծիրանագույն ճառագայթների տակ ոսկի ամպի էր նման: Ու երբ սարերի հետևում թաքնվեց արևը, ու աստիճանաբար խամրեցին երկրի գույները, գաղթականների մեծ բույլը մի ընդարձակ դաշտում իր առաջին դադարն առավ: Մանուկների գոչն ու*




ԼՈՒՅՍԻ ՀԵՂԵՂ, ԼՈՒՅՍԻ ՏՈՆ Է
ԽՆԴՈՒԹՅՈՒՆ.
ՀԱԶԱՐ ՇԵՓՈՐ ՀՆՉԵՆ ԹՈՂ
ԱՅՍ ԱՌԱՎՈՏ։

Գ. ՍԱՐՅԱՆ

կենդանիների բառաչը իրար էին խառնվել։ Քանի-քանի երեխաներ լալով իրենց մորն էին որոնում։ Քանի-քանի երեխաներ այն գիշեր կորցրին հարազատներին...

Վաղ առավոտյան նորից ուղի ելավ գաղթականների բազմությունը, որ վերստին քայլի գաղթի մահաբեր ճանապարհներով... Այո, մահաբեր եղավ շատերի համար այդ ճանապարհը. որքա՜ն մարդիկ ուժասպառ եղան սովից ու ծարավից և մնացին ճանապարհին։

Մենք էլ կմնայինք, եթե չհանդիպեինք ռուսական մի զորամասի։ Եվ մի քանի շաբաթ անց հասցրին մինչև փրկարար սահմանները։

### ՓԱԽՈՒՍՏ

Մեր որբանոցում գնալով վատանում էր սնունդը։ Սկսեցինք կիսաքաղց օրեր ապրել։ Սեղանը մաքրազարդում էինք հացի վերջին փշրանքներից...

Ամեն կիրակի, երբ մայրս, որ՝ բանվորուհի էր պահածոների գործարանում, մեզ այցի էր գալիս ու լսում մեր տրտունջները, համոզում, սիրտ էր տալիս։

— Մի քիչ էլ դիմացեք, գործերս լավանան, ձեզ այստեղ չեմ թողնի,— ասում էր նա խեղդված ձայնով, ու աչքերը լցվում էին արցունքով։

Սակայն, երբ կյանքի պայմաններն այլևս անտանելի դարձան, մի օր եղբայրս ու ես փախանք որբանոցից։

Անցնելով մեծ քաղաքի փողոցներով, դժվարությամբ գտանք մեր հորեղբոր տունը։

— Որտեղից եկել եք, այնտեղ էլ գնացեք,— ասաց նա։—Ո՞ւմ վրա եք հույս դրել։ Ո՞վ պետք է ձեզ պահի։

Բայց մայրս... Նա հասկացավ ամեն ինչ և մեզ ետ չուղարկեց։ Մնացինք, բազմապատկելով նրա, առանց այն էլ ծանր, հոգսերը։

### ԴԻԱԿԱՌՔԻ ՀԵՏԵՎԻՑ

Հիվանդացավ եղբայրս՝ Աղասին, որ բոլորիս սիրելին էր։ Նա բանվոր էր «Աղբյուր-տարազ» ամսագրի տպարանում։ Ծանոթների խորհրդով նրան հիվանդանոց փոխադրեցինք ու, ամեն անգամ, երբ այցի էինք գնում, զգում էինք, թե ինչպես աստիճանաբար մարում է նրա աչքերի կրակը...

Մի օր էլ հիվանդանոցից տուն եկավ իմ եղբայր Արծրունը։ Լուռ էր։ Ու մենք հասկացանք, որ այլևս չկա Աղասին։ Ասել էին, որ առավոտյան դիակառք տանենք, հակառակ դեպքում իրենք կթաղեն անհայտ ննջեցյալների գերեզմանատանը։ Սակայն որտեղի՞ց վերցնել միջոցներ հարազատին թաղելու համար։

Ու եղբայրս հաջորդ օրը գնաց հիվանդանոց, որ դիակառքի հետ գնա մինչև անհայտ ննջեցյալների գերեզմանատուն՝ շիրիմի տեղն իմանալու համար։ Երկար, շատ երկար վազել էր նա դիակառքի հետևից մինչև ուժասպառ ընկել էր մայթին ու զայրույթից աղեկտուր արտասվել... իսկ դիակառքը շարունակել էր իր ճանապարհը։

### ԴԱՌՆՈՒԹՅՈՒՆ

Վաղ զգացի անարդար կյանքի դառնությունը։ Մի կտոր հաց վաստակելու հոգսը մանկուց ուղեկցում էր ինձ։ Հարկավոր էր աշխատել, սակայն ո՞վ գործ կտար յոթ տարեկան երեխային, երբ քաղաքը լիքն էր գործազուրկ գաղթականներով։





Բայց մի օր էլ մեր հարևանը, որ կարեկցանքով էր վերաբերվում մեր ընտանիքին, ինձ ուղարկեց իր բարեկամի՝ պարոն Արշակի մոտ, ասելով, թե նա հոտաղի տեղ ունի: Ուրախությունից ոտքս գետնին չէր դիպչում: Անմիջապես ներկայացա Արշակին: Նա ոտից գլուխ չափեց ինձ ու բամբ ձայնով գոչեց.

— Ա՜յ տղա, էդ ես գլխից կտաս ու կովերը կտանես:

— Ձե՛ռ տանի, աղա՛ ջան, չե՛մ թողնի,— թախանձագին խնդրում էի ես, վախենալով, որ գործս ձեռքից գնում է:

Նա մի քիչ մտածեց ու համաձայնեց: Հաջորդ օրվանից դարձա պարոն Արշակի հոտաղը: Ամեն երեկո աղախինը, որ մի բարի կին էր, գաղտնի ինձ կերակրում էր սեղանի մնացորդներով: Դա էլ իմ միակ վարձատրությունն էր:

Գարնան մի օր, երբ կովերը տուն էի բերել, պարոն Արշակենց տանը արտակարգ եռուզեռ էր: Բակից երևում էր անուշաբույր ուտելիքներով ծանրաբեռնված սեղանը, նայում էի ու թուքս կուլ տալիս... Մերթ ընդ մերթ երևում էին հյուրերը, որ պարոն Արշակի ձեռքը ամուր թոթովելով ասում էին.

— Քրիստոս հարյավ ի մեռելոց.

— Օրհնյալ է հարությունը Քրիստոսի,[1]— հանդիսավոր պատասխանում էր վերջինս ու ներս հրավիրում հյուրերին: Ինձ տեսնելով, կարծես մի բան հիշեց ու ձեն տվեց կնոջը.

— Անա, զատիկ օր է, էն ալրից մի քիչ տար էս տղային, թող տանի, հաց թխեն, ցորեն հացի համը մոռացած կլինեն:

Եվ իսկապես, որ մոռացել էինք: Մայրս ամեն կիրակի շուկա էր գնում ու իր խղճուկ վաստակով մի տոպրակ եգիպտացորենի ալյուր առնում, որից հաց էինք թխում թիթեղյա վառարանի վրա:

Մի տոպրակ ալյուր հսկայական իրադարձություն էր մեր տանը: Շրջապատել էինք մորս ու նայում, թե ինչպես է թևերը քշտած խմոր հունցում: Իսկ երբ խմորի բլիթները շարվեցին վառարանի վրա, ու սենյակը լցվեց ցորեն հացի անուշ բույրով, այլևս անկարող էինք համբերել: Սկսեցինք կիսահում ու տաք հացերը ագահորեն ուտել...

— Դառն է, ուտել չի լինում,— առաջինը ասաց եղբայրս ու հացը ցած դրեց:

Մնացածներն էլ նույնն արին, սաստիկ վշտացած: Ու պարոն Արշակի հին ալյուրից պատրաստած հացը մի անգամ ևս հիշեցրեց մեր կյանքի դառնությունը:

## ԳԱՂՏՆԻՔՍ ԲԱՑՎԵՑ

Ամեն օր դասերից հետո արկղը ուսս գցած տանից դուրս էի գալիս: Քաղաքի մի փողոցի անկյունում, հայտարարությունների ցուցանակի սյան տակին տեղավորվելով, սպասում էի «մուշտարու»: Այդ տարիներին հաճախորդներ այնքան էլ չէին լինում: Ծանր ժամանակներ էին. մի պատերազմը հաջորդում է մյուսին, մարդիկ հազար տեսակ հոգսեր ունեին, ո՞վ էր մտածում կոշիկ մաքրել տալու մասին: Երբեմն ռազմաճակատից վերադարձած զինվորներն էին մոտենում ինձ ու իրենց երկարաճիտ կոշիկները մաքրել տալիս: Սակայն դա մի իսկական փորձություն էր ինձ համար, քանի որ նստած վիճակում չէի հասնում մինչև ճտքերի վերնամասը և ստիպված էի կանգնած մաքրել:

Շատ ավելի դժվար էր ինձ համար, երբ այդ զբաղմունքիս պահին մեր դպրոցի աշակերտներից, կամ, նամանավանդ, ուսուցիչներից մեկն ու մեկը տեսնում էր ինձ: Ինքնասիրությունս խիստ վիրավորվում էր, ուստի երբ հեռվից նկատում էի նրանց, կամ գլուխս կախ էի գցում, որ ինձ չճանաչեն, կամ խոզանակները շտապ կերպով արկղը գցելով, պահվում էի տան շքամուտքում, մինչև անցնեն:

Չգիտեմ ինչու, համոզված էի, թե ոչ ոք չգիտի, որ կոշիկ եմ մաքրում: Դպրոցում էլ ոչ ոք ցույց չէր տալիս, որ գիտե: Մի օր էլ, հայոց լեզվի դասին, երբ ուսուցիչը կարդում էր նոր դասը, որ խոսվում էր կոշիկ մաքրող տղայի մասին, իմ ընկերներից շատերն ակամա ինձ նայե-



[1] Այսպես էին զատկի օրը հավատացյալները ողջունում միմյանց:

ցին, ու առանց խոսքի՝ ես հասկացա, որ նրանք բոլորը գիտեն այն, ինչ այդպես խնամքով ես գաղտնի էի պահում...

## ՄԱՇՎԱԾ ԿՈՇԻԿՆԵՐԻՍ ՄԱՍԻՆ

Այդ օրը, մարմնամարզության դասին, երբ թըռիչք պիտի կատարեի, կոշիկիս կիսապոկված ներբանը դեմ առավ ինչ-որ բանի, ու ես փռվեցի գետնին։ Մինչև ես թափ էի տալիս փոշոտված շորերս ու գննում կարկատանների մեջ կորած կոշիկներս, ընկերներս ուրախ կատակում էին։

Հազիվ զսպելով լացս, մի կողմ քաշվեցի։ Տուն դարձա ընկճված, նեղացած՝ չգիտես ումից, ու մորս վճռականապես հայտնեցի, որ այդ կոշիկներով այլևս դպրոց չեմ գնա։ Մայրս ինքն էլ գիտեր, որ իրավացի եմ, սակայն... որտեղի՞ց վերցներ նոր կոշիկներ։

Մի հեռավոր ազգական ունեինք, խանութպան Թորոսը։ Նրա երկու որդիներն ու ես հասակակիցներ էինք։ Առաջին անգամը չէր, որ այդ երջանիկ տղաների հնամաշ կոշիկներն ինձ փրկում էին նեղ դրությունից։ Շալն ուսին գցելով, մայրս այս անգամ էլ ուղևորվեց նրանց տուն։

— Էս էլ քո կոշիկները,— ասաց նա, երբ վերադարձավ մի փաթեթ կռնատակին։— Մի քիչ քանդված տեղեր կան, ոչինչ, ախպերդ կկարկատի։

Նայում եմ, շուռումուռ տալիս։ Դե, իհարկե, սրանք ուրիշ կոշիկներից ավելի լավ վիճակում են՝ սև, ճտկավոր։ Բայց սա ի՞նչ է, նախ երկուսն էլ աջ ոտքի են, հետո մեկի քիթը սուր է, մյուսինը՝ կլոր։

— Ես սրանք հագնողը չեմ,— կտրականապես հայտնեցի ես։

Պետք է նայեիք խեղճ մորս դեմքին, ավելի մեծ վիշտ պատճառել չէր կարելի նրան։ Ի՞նչ հնարքներ ասես, որ նա չէր գործադրել ինձ դպրոց ուղարկելու համար... Ու հիմա թախանձագին համոզում էր ինձ, որ բերած կոշիկներով միառժամանակ յոլա գնամ, դասերից ետ չընկնեմ, մինչև մի ճար գտնի։ Բայց ես անդրդվելի էի։

Դուռը ճռռալով բացվեց, ու ներս մտավ իմ եղբայր Արծրունը՝ հոգնած ու գունատ դեմքով։ Նա աշակերտ էր մի մասնավոր կոշկակարի մոտ։

Վատ էր սկսվել այդ օրը ինձ համար, վատ էլ վերջացավ։ Մշտապես սիրով ու հոգատարությամբ վերաբերվող եղբայրս, որ այդ օրը ով գիտի ինչ պատճառով տուն էր վերադարձել մռայլ տրամադրությամբ, իմանալով տեղի ունեցածի մասին, խիստ նեղացավ վրաս ու վերջում էլ մի լավ ծեծեց։

— Ես էս տարիքում,— (նա ընդամենը 12 տարեկան էր),— մի կտոր հաց վաստակեմ, որ դու դպրոց գնաս՝ ինձ նման անգրագետ չմնաս, իսկ դու կոշիկի քթի սուրն ու բո՞ւթն ես հարցնում,— գոչում էր նա, վրդովմունքից ձեռք չտալով սեղանին դրված աղքատիկ ընթրիքին։

Երկար, շատ երկար լացեցի այդ երեկո։ Ոչ այնքան եղբորս ծեծն էր մղկտացնում իմ մանուկ հոգին, որքան մեր անօգնական ու դառը վիճակի գիտակցումը։ Ու այդպես էլ հեկեկալով ես քուն մտա։

Առավոտյան ինձ սովորականի պես արթնացրին արևի շողերը, որ ընկել էին դեմքիս։ Երեկվա ծանր հիշողությունը հոգուս խորքում, մի հայացք գցեցի եղբորս անկողնուն, որն արդեն դատարկ էր (նա գործի էր գնում դեռ լույսը չբացված)։ Եվ այ քեզ հրաշք. եղբորս անկողնուց փոքր-ինչ հեռու, նկատեցի մի զույգ համարյա նոր կոշիկներ։ Ապա հայացքս դանդաղ սահեց կոշիկների կրունկներից դեպի քթերը... Եվ գիտե՞ք որքան զարմացա, հրճվեցի. նրանք միաձև էին, երկուսն էլ կլոր։ Ախր որտեղի՞ց մի գիշերվա ընթացքում ճարվեցին սրանք։ Նկատելով իմ զարմանքը, մայրս բացատրեց ողջ գաղտնիքը։ Դա իմ եղբոր գործն էր։ Նա չէր կարողացել քնել։ Ամբողջ գիշերը նստել ու մորս բերած հին կոշիկները վերակարել էր, որ ես առավոտյան կարողանամ դպրոց գնալ։

Սիրելի ընթերցող, դու կարդացիր Վարազդատ Հարությունյանի «Մեր սերնդի մանկությունը» հուշը։ Իսկ ի՞նչ են անում հեղինակն և նրա եղբայրը մեր օրերին. այս հարցը քեզ անպայման կհետաքրքրի։ Վարազդատ Հարությունյանը գիտնական է՝ դոցենտ, դասախոսում է Երևանի Կ. Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտում։ Նրա եղբայրը՝ Արծրուն Հարությունյանը ռեսպուբլիկայի ժողովրդական դերասան է, աշխատում է Լենինականի Պետական թատրոնում։



Նկ. ՄԱՍԻՍ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# „ԵՎ ՊԱՆԴՈՒԽՏ ՉԵՄ…“

Սրահի մի անկյունում, սեղանին փոքրիկ մի ափսե է դրված: Մարդիկ մոտենում են, երկա՜ր-երկա՜ր նայում այդ ափսեին, կռանում համբուրում, ապա հեռանում են՝ հերթը զիջելով մյուսներին:

Ի՞նչ կա արդյոք այդ ափսեի մեջ:

Մի պատահական այցելու, որը ոչինչ չգիտե այդտեղ հավաքված մարդկանց մասին, միայն զարմանալ կարող է: Ափսեի միջինը հող է. սովորական գորշավուն, չոր հող:

Գուցե այդ մարդիկ հավատացյալնե՞ր են, գուցե նրանց համար այդ հողը ինչ-որ մի սրբությու՞ն է:

Այո, այդ հողը նրանց համար սրբություն է, բայց ոչ կրոնական սրբություն: Այդ հողը մի տուրիստ Սիրիայի Հալեպ քաղաքն է տարել Սովետական Հայաստանից: Եվ ահա Հալեպի հայերը մեկ-մեկ մոտենում են, նայում ափսեի միջի հողին, նայում են, համբուրում, սիրելի Հայրենիքից իրենց կարոտը առնում: Չէ՞ որ այդ սովորական հող չէ:

Սովետական Հայաստան այցելած տուրիստը ոգեվորությամբ պատմում է այն ամենի մասին, ինչ տեսել է Հայաստանում, և ամենքը հափշտակությամբ լսում են: Հայաստանում վերաշինվել են քաղաքներն ու գյուղերը: Հայաստանում մարդիկ ապրում են լուսավոր ու երջանիկ կյանքով, առանց անհանգստանալու վաղվա օրվա համար: Հայաստանում ամեն մի ակնթարթը, ամեն մի օրը մի նոր հաղթանակով է պսակվում:

Սովետական Հայաստանում… Եվ ահա այդտեղից է բերված այդ մի ափսե հողը:

Սրահում խմբված մարդկանց մեջ է նաև 22-ամյա բանաստեղծ Ժողեֆ Հաջյանը: Նա նույնպես ամբողջ կյանքում երազել է Հայրենիքի մասին, նա նույնպես այժմ հափշտակությամբ լսում է տուրիստի պատմածները և նրան թվում է, թե այդ փոքրիկ ափսեի մեջ ամփոփված մի բուռ հողի վրա ինքը տեսնում է այն ամենը, ինչ տուրիստն է պատմում:

*Պնակ մը հող… Հետո շինքեր տուփագույն,*
*Հետո խոյանք ու կառուցում անընդհատ.*
*Ու նոր սերունդ՝ նոր խոհերով առույգուն,*
*Դեռ գալիքի այգեստաններ սիրառատ:*

Երգն է ծնվում բանաստեղծի հոգում: Այդ երգի մեջ կարոտ կա, անհուն կարոտ Հայրենիքի հանդեպ: Այդ երգի մեջ հորդում է իրավացի հպարտությունը հայ մարդու:

Ժողեֆ Հաջյանը մեկն է բազմաթիվ այն հայ երիտասարդներից, որոնք ցրված են երկրագնդի բոլոր կողմերում: Բախտը նրանց մի երկրից մյուսն է նետում, բախտ, որ այնքան փոփոխական է, անկայուն՝ Հայրենիքից հեռու ապրող մարդկանց համար:

Ժողեֆ Հաջյանը ծնվել է 1935 թվականին, Թուրքիայում: Նա երկու տարեկան էր, երբ ծնողներըստիպված եղան գաղթել Սիրիայի Հալեպ քաղաքը: Նա չկարողացավ կանոնավոր ուսում ստանալ, որովհետև պայմանները հաճախ նրան ստիպում էին ընդհատել ուսումը:

Սակայն Ժողեֆը իր կրթության համար մի անսահման աղբյուր ուներ, որից նա օգտվում էր առատորեն: Այդ հայրենի գրականությունն էր, հայրենի կուլտուրան և արվեստը:

Ժողեֆը տասնհինգ տարեկան հազիվ լիներ, երբ գրեց առաջին բանաստեղծությունը, որը լույս տեսավ Հալեպում հրատարակվող «Սիրիա» օրաթերթում: Այդ նույն տարին նա ընդունվեց Սիրիայի կոմունիստական պարտիայի շարքերը:

Ահա ընդհանուր գծերով Հաջյանի կենսագրությունը: Չէ՞ որ նա դեռևս շատ ու շատ երիտասարդ է:

Բայց ի՞նչ է նշանակում ծանոթանալ մարդու կենսագրության հետ: Այդ նշանակում է ծանոթանալ այն ամենի հետ, ինչ նա արել է կյանքում, ծանոթանալ նրա հոգու հետ, իմանալ նրա մտքերը:

Եկեք փորձենք մենք էլ այդպես վարվել: Այդ բանում մեզ կարող են օգնել Հաջյանի այն երկու գրքերը, որոնք լույս են տեսել դեռևս արտասահմանում:

*Աստղերու տակ այս վառ,*
*Քեզմե հեռու՜, հեռու՜,*
*Գիշեր ըլլա, թե բոլր*
*Առավոտ մը վարար,*
*Քեզ կտենչամ ես միշտ,*
*Դարձած տենչ ու կարոտ,*
*Քեզ կկանչեմ ես միշտ,*
*Իմ Հայաստան:*

Այդպես է երգում Հաջյանը: Կարոտը, Հայրենիքի հանդեպ անհուն, անհատնում կարոտը ծորում է նրա բոլոր երգերի մեջ: Այդ կարոտը միայն երիտասարդ գրողի համար չէ, որ բնորոշ է: Աշխարհի տարբեր երկրներում ապրող բոլոր հայերն էլ ապրում են այդ վառ կարոտով, բոլորն էլ տենչում են վերադառնալ իրենց հայրենիքը:

Այս տարի ժողեֆը եկավ Հայաստան: Նրա կյանքի ամենալուսավոր ու նվիրական երազանքը կատարվեց: Այստեղ նա ընդունվեց Համալսարանի բանասիրական ֆակուլտետը, միաժամանակ Հայաստանի պետական հրատարակչությունը տպագրության ընդունեց Հաջյանի բանաստեղծությունների նոր ժողովածուն, որի խորագիրն է՝ «Ալ պանդուխտ չեմ»:

«Ես կարծես թե նոր-նոր միայն ծնվել եմ,— ասում է Հաջյանը: Այստեղ ես դեն նետեցի իմ





## ՊԱՆԴՈՒԽՏԻ ՊԵՍ ԿԱՐՈՏԱԳԻՆ

ՎԱՀՐԱՄ ՀԱՋՅԱՆ

*Թեև հիմա պանդուխտի պես չեմ թափառում,*
*Չեմ տոչորվում կարոտալար երգերի մեջ,*
*Բայց ես նորից պանդուխտի պես քեզ եմ սիրում,*
*Քեզ եմ բերում ես իմ հոգին կարոտակեզ:*

*Թեև հիմա չկա տնակն այն տխրահեծ,*
*Ուր քանի հեղ քեզ եմ զգել իմ երազում,*
*Բայց ես նորից այն երազում տղայի պես,*
*Քեզ եմ սիրում, իմ հայրենիք, քնարահունչ:*

*Թեև հիմա չկա արցունք աչքերիս մեջ,*
*Չկա մրմունջ ու տխրություն անհանգրվան,*
*Բայց ես արդեն նոր արցունքով երջանկաբեր,*
*Քեզ եմ զգում իմ հոգու մեջ ամեն վայրկյան:*

*Թեև հիմա ես քայլում եմ հաղթահասակ,*
*Եվ քո լույսն է բացվում իմ դեմ որպես ծաղիկ,*
*Բայց ես նորից հին օրերի նման պապակ,*
*Չեմ հագենում, չեմ հագենա ես քեզանից:*

*Ա՜խ, ինչ լավ է անվերջ ապրել հայրենիքում,*
*Խառնվել հիմա սիրող ամբողջ նրա հողին,*
*Իր խոյանքից առնել թռիչք ու զորություն,*
*Սիրել նրան պանդուխտի պես կարոտագին:*



նախկին անունն էլ ու հիմա ոչ թե Ժոզեֆ եմ, այլ Վահրամ: Ժոզեֆը ինձ շարունակ հիշեցնում էր իմ անուրախ անցյալը: Իսկ հիմա սովորելու եմ ազատ Հայաստանում, ստեղծագործելու եմ ազատ Հայաստանում, հայրենի հողի վրա, որին կարոտով ձգտում են աշխարհի բոլոր տարագիր հայերը»:

Դեռ 1958 թվականին Հաջյանը մի ոտանավոր էր գրել՝ նվիրված հայրենադարձ գրողներին: Այդ ոտանավորի վերնագիրն էր՝ «Ալ պանդուխտ չեմ» Այդ բանաստեղծության մեջ հայրենադարձ գրողի կողմից նա ասում է.

*«Ալ պանդուխտ չեմ...*
*Ես հին կյանքս մոռցա հեռուն...*
*Գաղթականի վիշտերս բյուր*
*Ես թաղեցի տունի մը մեջ օտարաբույր...»*

Այն ժամանակ Վահրամը բոլորովին չգիտեր, որ անցնելու է հազիվ երկու տարի, և այդ խոսքերը դառնալու են իր սրտի խոսքերը: Չգիտեր, որ ինքը ընդամենը երկու տարի հետո ընդմիշտ դեն է նետելու պանդխտության ցուպը և որ Սովետական Հայաստանում, իր ողջ կյանքի երազանքների լույս օրրանում հրատարակվելու է իր ժողովածուն, որի վերնագիրն է լինելու այդ երգի առաջին տողը. «Ալ պանդուխտ չեմ...»

*Այս լուսանկարը կատարված է 30 տարի առաջ:*




*Նույն վայրը 1960 թվականին։*

# ՆՈՐ ԵՐԵՎԱՆԸ

Սիրելի ընթերցող, դու երբեք չես գուշակի, որ նախորդ էջի լուսանկարում պատկերված է Երևանի թաղամասերից մեկը։ Դու տեսնում ես հողաշեն ու խղճուկ հյուղակներ, որոնք կքվել են դարերի ծանրության տակ։ Նեղ և ծուռումուռ փողոցներում ամբողջ տարին ճլոփում էին տղմալճակները, որոնք գարշահոտությամբ էին լցնում ամբողջ շրջապատը։ Լուսանկարի առաջամասում դու տեսնում ես տների տանիքներին աճած ուղտափշերը։

Հիմա այդ նույն վայրում քաղաքը զարդարում են բազմաթիվ բնակելի շենքեր, մանկապարտեզներ, հիվանդանոցներ։ Իր հոյակապ կեցվածքով կանգնել Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնը, որը դու տեսնում ես այս էջի լուսանկարում։ Օպերայի և բալետի թատրոնը այսօր շրջապատում է Թավրիզյանի անվան պուրակը, որը քո ամենասիրելի վայրերից է։ Դու հանգստանում ես այնտեղ, ազատ ժամերիդ հեծանիվով զբոսնում հրապարակում։

# Մի պատկեր հին Երևանից

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ամեն անգամ, երբ բացվում է
Արշալույսը վարդագույն,
Ես կսկիծով միշտ հիշում եմ
Մանուկներին այն անուն:

Երկու փոքրիկ որբ մանուկներ
Աշնան մի ցուրտ առավոտ
Քայլում էին փողոցն ի վեր՝
Գառների պես վարանոտ:

Ցուրտ էր այնպես Երևանում,
Քամին երգում էր տխուր.

Երևանն էլ, ասես, ցրտում
Զգում էր խոր մի սարսուռ:

Քայլում էին մարդիկ արագ՝
Չնայելով մեկ-մեկու.
Ո՞վ կտեսներ այդ ժամանակ
Մանուկներին այդ երկու:

Մերկ էր մեկը ամբողջովին,
Իսկ մյուսը՝ պարկ հագած,
Մտամոլոր քայլում էին
Խեղճ, դողահար ու քաղցած:

Փոքրիկ տղան մեղմ շշնջաց.
— Եղբայր, ցուրտ է, մրսում եմ,



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԽՈՍՈՒՄ ԹՎԵՐ

**1920—21 ուսումնական տարում Հայաստանի դպրոցներում աշխատում էին ընդամենը 1230 ուսուցիչ: Այժմ ուսուցիչների թիվը հասնում է 20.891-ի:**

**1920 թվականին Հայաստանում լույս է տեսել 3 անուն դասագիրք: Այժմ ամեն տարի հրատարակվում է 100 անուն դասագիրք՝ 2 միլիոն 205 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով:**

**1921 թվականին Հայաստանում կար 9 մանկապարտեզ: 1960 թվականին Հայաստանում գործում են 354 մանկապարտեզներ, որինցում դաստիարակվում է 22.765 երեխա:**

## ՄԵԾ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Երևանի էլեկտրամեխանիկական գործարանի տերիտորիայում 1927 թվականին կար միայն մի ավտոնորոգման արհեստանոց: Այժմ այդ գործարանում արտադրվում են հիանալի էլեկտրաշարժիչ մեքենաներ, որոնք օգտագործվում են Միության շատ քաղաքներում: Իր բազմաթիվ արտադրական կորպուսների կողքին բարձրանում է վարդագույն տուֆից կառուցված բազմահարկ մի նոր շենք, որտեղ պիտի կազմակերպվի ասինխրոն էլեկտրաշարժիչների ավտոմատացված և բարձր տիպի մեքենայացված արտադրություն:

## 36 ՏԱՐԵԿԱՆ ԳՅՈՒՂԸ

Շահումյանի շրջանի Ն. Զարթալու գյուղը հիմնադրվել է ընդամենը 36 տարի առաջ: Այդ գյուղի տեղը ամայի ու փշոտ տարածություն էր, որտեղ բնակվում էին միայն... օձերն ու կարիճները: Այժմ Ն. Զարթալում կա հարուստ կոլտնտեսություն, որը պտղաբուծությունից ու այգեգործությունից տարեկան ստանում է 5 միլիոնից ավելի եկամուտ: Նախկին կավե տները հիմա փոխարինվել են տուֆաշեն շենքերով, և 320 կոլտնտեսականներից 300-ը ունեն երկհարկանի ու միահարկ նորակառույց առանձնատներ:




Էլ ուժ չունեմ մի քիչ կամաց,
Ոտքերս արդեն ցավում են:

— Լաց մի լինի, իմ եղբայրիկ,
Ի՞նչ կարող եմ ես անել.
Ինքս էլ քեզ պես ոտաբոբիկ,
Հագիս մի պարկ եմ ճարել:

Ա՛ռ, հիմա էլ ինքդ հագիր
Ու տաքացիր դու մի քիչ.
Եղբայր, ցրտից մի՛ վախեցիր.
Ի՞նչ կարող ենք անել, ի՞նչ...

Ցուրտ էր այնպես Երևանում,
Քամին ոռնում էր տխուր.
Երևանն էլ, ասես, ցրտում
Զգում էր խոր մի սարսուռ:

Երկու փոքրիկ որբ մանուկներ,
Գառների պես վարանոտ,
Քայլում էին փողոցն ի վեր՝
Աշնան մի ցուրտ առավոտ:

Քայլում էին... ու չիմացան,
Թե ո՞ր կողմից, արդյոք, ո՞ր
Կապեց պայծառ մի ծիածան,
Շողաց արև մի բոսոր:

Շողաց պայծառ մեր երկնքում
Փռեց գարուն մի անշեջ,
Եվ գուրգուրեց իր ջերմ գրկում
Մանուկներին որբ ու խեղճ:



## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ԱՄԱՅԻ ՎԱՅՐԵՐ ԷԻՆ

Այնտեղ, ուր այժմ տարածվել է Նոր Արեշ ավանը իր գեղեցիկ շենքերով ու պարտեզներով, սրանից 30 տարի առաջ անմարդաբնակ տարածություն էր: Այժմ Նոր Արեշը միացել է Երևանին: Այնտեղ գործում են հիվանդանոց, պոլիկլինիկա, բաղնիք, կուլտուրայի տուն և չորս դպրոց: Կան նաև մի շարք գործարաններ՝ Ասֆալտ-բետոնի, Լաքի ու Ներկի, Ամբարձիչ-տրանսպորտային սարքավորումների, Մսի կոմբինատ և այլն: Ավանի միջով սլանում են տրամվայն ու ավտոբուսները:

## ՈՒՐ ԿԱՐ ՄԻԱՅՆ ՄԻ ՏՆԱԿ

Դեռևս չորս տարի սրանից առաջ այժմյան Ազիզբեկով ավանի տեղը՝ Արփա գետի աջափնյա հովտում, կար միայն մի տնակ, ուր իրենց դաշտային գործիքներն էին տեղավորում Ազատեկ գյուղի կոլտնտեսականները: Այժմ Ազիզբեկով նորակառույց ավանը՝ իր ասֆալտապատ փողոցներով, սքանչելի շենքերով, զբոսայգիներով ու ծառուղիներով համարվում է Հայաստանի լավագույն շրջկենտրոններից մեկը:




**Սովետական իշխանությունը իր ստեղծման մի քանի ամիսների ընթացքում Հայաստանում ավելի շատ դպրոցներ կառուցեց, քան ցարիզմը 100 տարում:**

**1919 թվականին Հայաստանում գործում էր ընդամենը 166 դպրոց՝ 18600 սովորողներով:**

**1959—60 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում էին 1215 մասսայական հանրակրթական և 220 բաներիտ ու գյուղերիտ դպրոց՝ 311 հազար 500 սովորողներով:**

**1965 թվականին ռեսպուբլիկայում կգործեն 1297 դպրոցներ՝ 432 հազար աշակերտներով: Յոթնամյակում 14 անգամ կավելանա ռեսպուբլիկայի գիշերօթիկ դպրոցների թիվը:**



Նկ. ՆԻԿՈՂԱՅ ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԾԱՂԻԿՆԵՐԸ

ԱՐԱՐԱՏ ԲԱՐՍԵՂՅԱՆ

Գործարան... Այս բառը կարծես այն չէ՝ բնորոշելու համար նրա արտաքին տեսքը, ներքին կարողությունն ու սրտի անզուսպ տրոփյունը: Ո՛չ, նա նման չէ սովորական գործարանի, և ոչ էլ այստեղ աշխատող մարդիկ են սովորական: Նա նման է մի հսկա ավանի, ուր ապրում և ստեղծագործում են շատ երիտասարդ աղջիկներ ու տղաներ:

Ահա ստատորների փաթաթման տեղամասը: Հարթահոսի մոտ կանգնած են երիտասարդ աղջիկներ: Նրանք կատարում են շատ նուրբ աշխատանք, այն, ինչ մեքենան չի կարող անել: Այդ աշխատանքը դեռ չի մեքենայացված ոչ մի գործարանում, լարերի այդ լաբիրինթոսի զանազանումն ու տեղադրումը ստատորի ներսում կարող են կատարել միայն մարդկային ձեռքերը:

Այս տեղամասում աշխատում են միայն կանայք: Նրանց մեջ կան շատ ուսանողուհիներ, որոնք և՛ սովորում, և՛ աշխատում են: Բարձրագույնն ավարտելուց հետո նրանք պետք է սկսեն աշխատել իբրև գործի մեջ փորձված մասնագետներ:

Բայց ահա գործարանի լավագույն բանվորուհին, կոմունիստական աշխատանքի բրիգադի բրիգադավար Գրետա Ստեփանյանը:

Հերոսներին մենք միշտ պատկերացնում ենք վիթխարի, ամուր բազուկներով, թիկնեղ, սակայն իրականում Գրետան սովորական մի հայ աղջիկ է:

Ես զգացի, որ նա նկատեց ինձ: Տեսա, թե ինչպես ամոթխածությամբ թաքցրեց գլուխը ստատորի հետևում ու շարունակեց աշխատել: Թող աշխատի, ես ուզում եմ տեսնել նրա աշխատանքը:

Գրետայի բրիգադի անդամները շատ երիտասարդ են: Աշխատում են միևնույն հարահոսի մոտ: Աշխատում են մեծ եռանդով: Տեսա, թե ինչպես են նրանք պայքարում յուրաքանչյուր արդյունավետ րոպեի համար: Հենց այդ արդյունավետ րոպեների հետևանքով է Գրետա Ստեփանյանի բրիգադը արժանացել կոմունիստական աշխատանքի բարձր կոչման: Եթե առաջ հարահոսը յոթ րոպեն մեկ էր մատուցում ստատորը,

## ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴ

Այստեղից հեռու՝ Շվեդիայում մենք գիտենք ձեր հրաշալի երկրի մասին, նրա աշխատասեր ու տաղանդավոր ժողովրդի մասին: Մենք գիտենք նաև, որ Հայաստանը հարուստ է պատմական ու կուլտուրական հուշարձաններով: Անցյալում բազմիցս հայ ժողովուրդը ծանր փորձություններ է ապրել. և մենք ուրախ ենք, որ այժմ ձեր կյանքը դարձել է ավելի լավ ու ավելի երջանիկ:

Ձեր ժողովրդի զավակները ինչպես բոլորին հայտնի է դարձել են կուլտուրական ու պետական ականավոր գործիչներ:

Տ. ԷՐԼԱՆԴԵՐ

Շվեդիայի պրեմիեր մինիստր:

1956 թ.

ապա՛ Գրետա Ստեփանյանի բրիգադը համարյա երկու անգամ արագացրել է ժապավենի ընթացքը:

Երկար չտևեց իմ լռությունը. ինձ հիացրեց Գրետայի կատարած աշխատանքի մաքրությունը, նրա մատների ճկունությունը:

— Միշտ այդպե՞ս եք աշխատել,— հարցրի նրան:

— Ոչ,— Գրետան ժպտաց:— Այն օրից, երբ աղջիկների հետ որոշեցինք աշխատել կոմունիստաբար: Այդ է պատճառը, որ այժմ մենք մեր պլանները կատարում ենք 150-ից 170 տոկոսով: Այժմ իմ բրիգադը աշխատում է էլ ավելի բարձր արտադրողականությամբ: Մենք պետք է Հայաստանի քառասնամյակը դիմավորենք լավագույն ցուցանիշներով:

Գրետան լռեց ու շարունակեց աշխատանքը:

Արդեն ամեն ինչ ասված էր: Նրա բրիգադի մյուս անդամները՝ Սարգսյան Սեդան, Սահակյան Ռիման և ուրիշները թեպետ լսում էին մեր զրույցը, բայց չէին կտրվում աշխատանքից: Նրանք միայն ժպտում էին, և այդ ժպիտը մեր երջանիկ առօրյայի, աշխատանքային հաջողությունների ժպիտն էր:

Ես գոհ սրտով հեռացա Գրետա Ստեփանյանի տեղամասից:

Մոտեցա ուսանողուհիներին: Նրանք սովորում են Պոլիտեխնիկական ինստիտուտում և աշխատում գործարանում: Միկոյան Զուլետան տասնինը տարեկան է, իսկ Ջատիկյան Լիանան՝ տասնութ: Շուտով կլրանա մեկ տարի, ինչ նրանք աշխատում են այստեղ:

Լենինի անվան գործարանը ճանաչված է ամբողջ Միության մեջ: Նրա արտադրանքը ուղարկվում է 36 երկիր՝ Ցեյլոն, Ինդոնեզիա, Արգենտինա, Իտալիա...




Հասակ է առել հայ ժողովուրդը, ստեղծել է բարձր կուլտուրայի արտադրանք. այդ արտադրանքը աշխարհե-աշխարհ ման գալով պատմում է մեր դուստրերի աշխատանքային սխրագործությունների մասին:

Երբ ես արդեն հեռանում էի գործարանից, նորից հանդիպեցի Գրետային ու իր ընկերուհիներին: Նրանք դուրս էին եկել ցեխից և հանգստի ժամին զբոսնում էին բակի ծաղկանոցում: Ջրում էին ծաղիկները, որպեսզի ավելի բուրումնալից լինեն ու գեղեցիկ:

## ԲԱՐՁՐԱՐՎԵՍՏ ԿՈԹՈՂՆԵՐԻ ԵՐԿԻՐ

«Հայաստանի և հայ ժողովրդի մասին շատ էինք լսել ու կարդացել: Գրականության միջոցով արդեն որոշ գաղափար ունեինք նրա հնադարյան կուլտուրայի և արդի զարգացման մասին: Սակայն չէինք սպասում, թե այսքան շատ լավ բան կտեսնենք: Սովետական մարդիկ աշխատող և ստեղծագործող մարդիկ են: Մեզ վրա ուժեղ տպավորություն գործեցին Հայաստանի հին հուշարձանները՝ Զվարթնոցը, Գառնին, Գեղարդի միանգամայն ուրույն կառույցները, որոնցում զգացվում է հայկական ազգային ճարտարապետությունը, նրա վեհությունը:

ԻՎԱՆ ԴԱ ԿՈՍՏԱ ՓԻՆՏ

Բրազիլիական ճարտարապետների դելեգացիայի ղեկավար

1955 թ.

## ԻՆՔՆԱՏԻՊ ՔԱՂԱՔ

Երբ Երևանի վերակառուցումն ավարտվի, նա կդառնա աշխարհի գեղեցկագույն և իր ազգային ճարտարապետական ոճով ինքնատիպ քաղաքներից մեկը:

ՄԻՏՉԵԼ ՈՒԻԼՍՈՆ

Ամերիկացի գրող՝ ֆիզիկոս

1958 թ.

## ՈՒՆԵՎՈՐ, ԵՐՋԱՆԻԿ ԿՅԱՆՔ

Հայ ժողովուրդը իրոք հասել է վիթխարի նվաճումների: Կոլտնտեսություններում մենք այցելեցինք արտելի անդամների տները: Ամենուրեք մենք տեսանք հեռուստացույցներ, ռադիոընդունիչներ, դաշնամուրներ, գրքեր: Դա վկայում է գյուղի աշխատավորների ունևոր, երջանիկ կյանքի մասին: Մեզ վրա մեծ տպավորություն գործեց վերին Արտաշատ գյուղի կոլտնտեսային կուլտուրայի պալատը:

ՄԱՐԻՆ ՖԼՈՐԵԱ ՅՈՆԵՍԿՈՒ

հասարակական գործիչ, Ռումինիա,

1959 թ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ Եկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է ձրի հավելված, որպես հոբելյանական նվեր։

## ՍՊՈՐՏԱՅԻՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐ

*Նախասովետական Հայաստանում չէիր գտնի մարմնամարզության ոչ մի մասնագետ։ Այժմ մեր ռեսպուբլիկան ունի սպորտային մեծ ընկերություններ, տեխնիկումներ, ինստիտուտ, որտեղ աճում են սպորտի նորանոր մասնագետներ։ Հայաստանում հիմա կան սպորտի 1660 մասնագետ, 261 վարպետ սպորտսմեններ և սպորտի 14 վաստակավոր վարպետներ։ Միայն վերջին 5—6 տարում հայ սպորտսմենները նվաճել են աշխարհի, Եվրոպայի, Օլիմպիական խաղերի ավելի քան 50 ոսկե և 20 արծաթե մեդալ։ Համաշխարհային փառք են վայելում մեր ռեսպուբլիկայի սպորտի վարպետներ Ալբերտ Ազարյանը, Հրանտ Շահինյանը, Վլադիմիր Ենգիբարյանը, Իգոր Նովիկովը, Նորայր Մուշեղյանը և ուրիշներ։*

## ՎԻՐԱԲՈՒՅԺԻ ԴԱՆԱԿԸ ՀԱՍԵԼ Է ՍՐՏԻՆ

*Դարեր շարունակ մարդու մարմնի ամենախոցելի և անբուժելի օրգանը եղել է սիրտը։ Վիրաբույժները կարողանում էին անդամահատել մարդու վերջավորությունները, նրանց դանակը վարպետորեն խաղում էր մարմնի ներքին օրգանների վրա՝ մարդուն փրկելով մահից։ Իսկ սիրտը... Դա անձեռնմխելի օրգան էր։ Սրտի վրա կատարված վիրահատական միջամտությունը նշանակում էր վերջ տալ մարդու կյանքին։*

*Եվ այն, ինչ դարեր ու հազարամյակներ անհավանական էր թվում, այսօր կատարվում է Երևանում։*

*Մեր վիրահատները կանոնավորում են սրտի միջնապատի վրա գտնվող աննորմալ անցքերը, լայնացնում են նեղ փականները, նորոգում կամ փոխում են սրտի տարբեր մասերը պլաստիկ զանգվածներով՝ նայլոնով, օրլոնով և դակրոնով։*

*Ամբողջ աշխարհում հայտնի է նշանավոր վիրահատ դոկտոր Ս. Ճաղարյանի անունը։ Նրա կազմած՝ աշխարհում առաջին սրտի վիրահատման ապարատը անցյալ տարի Բրյուսելի Համաշխարհային ցուցահանդեսում արժանացավ ամենաբարձր՝ Գրան պրի մրցանակին։*

ՀՈՎԻԿ ՔԵՐՈԲՅԱՆ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՋՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—88, 2—59—06։

ՎՖ 03985. Պատվեր 1560։ Տպաքանակ՝ 6500։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 11/XI 1960 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.

# ԿՐՊԱԿ ԱՌԱՆՑ ՎԱՃԱՌՈՂԻ

Քնարիկը մայրիկի հետ գնացել էր մորաքրոջ տուն: Նա առանձնակի սիրով էր այնտեղ գնում, որովհետև մորաքրոջ աղջիկը՝ Գոհարիկը նույնպես չորրորդ դասարանցի էր, բայց սովորում էր ուրիշ դպրոցում:

Երբ նրանք բավականաչափ խաղացել էին, թերթել ու կարդացել Գոհարիկի նոր գրքերը, դուրս եկան բակ:

— Քնարի՛կ, իսկ դու գիտե՞ս, որ մեր դպրոցն անցել է ինքնասպասարկման. մենք ենք մաքրում մեր դասասենյակները: Մեր դասարանը միշտ էլ մաքուր է լինում, դրա համար անցյալ օրը դիրեկտորը մեզ գովեց:

— Պա՛հ, մեծ բան է էլի,— ասաց Քնարիկը,— հիմա բոլոր տեղերում էլ ինքնասպասարկում է: Ա՜յ, սա, որ դուք էլ մեզ նման ունենաք գրենական պիտույքների կրպակ՝ առանց վաճառողի:

— Ինչպե՞ս թե՝ առանց վաճառողի:

— Շատ պարզ,— հեգնեց Քնարիկը,— հո խանութ չի, որ վաճառեն, մեր կրպակն է, փողը դնում ենք, տետրը կամ մատիտը վերցնում:

— Երանի մեր դպրոցում էլ լիներ: Մեկ էլ տեսար գրչածայրը կոտրվեց, դե թող դասը և վազիր գրախանութ...



— Լավ է, չէ՞: Դուք էլ կազմակերպեք,— ասաց Քնարիկը:

— Իսկ կկարողանա՞նք, կըստացվի՞:

— Ինչու՞ չեք կարող:

... Երբ Երևանի Ավետիք Իսահակյանի անվան դպրոցի աշակերտները վերադարձել էին ամառային արձակուրդներից, հրավիրվեց դրուժինայի խորհրդի նիստ: Ներկա էր և դիրեկտորը:

Շատ աշակերտներ դասերից ուշանում են տետրի, գրչածայրի, ռետինի պատճառով,— ասաց ավագ ջոկատավարը,— պատահում է մոռանում են դրանք բերել և դասամիջոցին վազում են գրախանութ: Իսկ գիտեք, որ գրախանութն էլ բավականին հեռու է:

— Լավ կլինի, եթե մեզ մոտ կազմակերպենք գրենական ամենօրյա անհրաժեշտ պիտույքների վաճառք,— խոսեց դիրեկտորը և, ներկաների դեմքերին զարմանք նկատելով, ավելացրեց,— կկազմակերպենք առանց վաճառողի, փողը կդնենք և կվերցնենք ցանկացածը:

Կրպակ բանալու լուրը ոգևորեց ամենքին:

Մյուս օրը այս մասին գիտեին համարյա բոլոր աշակերտները, պարզ է, որ պատմել էին դրուժինայի խորհրդի անդամները: Դա շատերին էր հետաքրքրել:

— Տղաներ, պատկերացնո՞ւմ եք՝ «կրպակ առանց վաճառողի» —կատակում էր Աշոտը և այն հիշելով առանց վաճառողի աշխատող խանութների ցուցանակները, ավելացնում,— կրպակը աշխատում է առանց վաճառողի, խնդրվում է գնել ցանկացած իրը և դրամը վճարել...— այստեղ նա շփոթվեց,— իսկ դրամը ո՞ւմ վճարել, տղաներ:

— Դրամը դնելու են սեղանին, որտեղից վերցնելու են պիտույքները,— իր բանիմացությունը հանդես բերեց Գուրգենը:

— Խելքս բան չի կտրում,— ասաց Գագիկը,— երկու օր դժվար թե աշխատի, վնաս կանեն:

— Ինչու՞:

— Կարող է փող չդնեն կամ քիչ դնեն:

— Սխալվում ես, ոչ մեկն էլ այդպիսի բան չի անի:

... Երրորդ օրը, երբ աշակերտները դասի եկան, ուսուցչանոցի մոտ տեսան կարմիր շորով ծածկված մի սեղան, որի վրա դարսված են տետրեր, թղթապանակներ, մատիտներ, գրչածայրեր, գրիչներ, ռետին, քանոն, թանաքի փոշի և գներն էլ վրան նշանակված: Շուտով բոլորը հավաքվեցին կրպակը տեսնելու: Սկսեցին գնումներ կատարել: Շատերը գնում էին հենց այնպես, ուղղակի հետաքրքրության համար: Մինչև դասերի վերջը եղածը սպառվեց: Հայտնի դարձավ, որ այդ գործով զբաղվում են ավագ ջոկատավար Արմենուհի Գալստյանը և աշակերտական կոմիտեի նախագահ, ութերորդ դասարանցի Մարգարիտ Մելիքյանը: Մարգարիտն էր գրախանութից գնում անհրաժեշտ պիտույքները և բերում, իսկ հետո վաճառքից գոյացած դրամով կրկին գնում:

Այժմ աշակերտները դպրոցն առանց կրպակի չեն պատկերացնում:

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

